ունենան․ պատրիարքարաններու իրաւասութեան խնդիր, հողային խնդիր և հայաբնակ գաւառներու ապահովութեան խնդիր։ Եւ առանց մասին ամէն հայու, ինչ կուսակցութեան և ինչ հասանքի ալ պատկանի, փափաքը մայնութիւնը միևնոյնն է, հետևաբար անոնց պաշտպանութեան համար պէտք էն մեզի ոչ թէ Դաշնակցական, Վեր. Հնչակեան կամ Ս․ Դ․ Հնչակեան և այլ հատուածներու սրտակից հայ երեսփոխաններ, այլ կարող, և բառին բուն նշանակութեամբ հայ երեսփոխաններ, ինչ կուսակցութեան և ինչ խմբակցութեան ալ պատկանին։

Հետևաբար այս տեսակէտով, բոլոր հայ քաղաքական կուսակցութիւններն ու խմբակցութիւնները ընտրական պայքարին մէջ իրենք իրենց հաշւոյն գործելու համար Իթթիհատին կամ Իթիլաֆին հետ համակցութիւններ կապարելէ առաջ պէտք էր նախ իրենք իրենց մէջ համաձայնէին։ Աս կը պահանջէր հայուն շահը։

Թէ ինչո՞ւ չեղաւ այսպէս ու չ'իրականացաւ համազգային համերաշխութիւնը՝ ընտրական պայքարին շուրջ և ո՞վ էին պատասխանատուները՝ ուրիշ առթիւ։

—o*.*o—

## ՆՇԽԱՐ ՀԱՅ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ

### ԱՏԱ–ԲԱԶԱՐ ԳԻՒՂԱՔԱՂԱՔԻ ԲՆԱԿՈՒԹԵԱՆ ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ

Դ.

Միենոյն տարին (ԻԺՆԵ—14 5) Յոյները Դոպիթի լեռները բնակող Մարաշի Հայերը նեղը ձգեցին, անոնք ալ Փէյգի Ակայէն քաջալերուած, մանաւանդ (Յունացմէ) երկու աղջիկներ առեւանգեցին և Տ. Նչիկ Քահանային գլխաւոր Հայ ծէսով պսակուեցան։ Այս դէպքէն Յոյները շատ բարկացան և կուզէին վընասել մեզի, բայց ոչ մէկ կերպով կրնային չարիք ընել, որովհետև քաջ համոզուած էին որ Թուրքերը կը պաշտպանէին մեզ։ ՌՆԺԶ – 1416 թուականին Դոպիթցոց Յոյները իրենց գիւղը և ամբողջ լեռը այրելով և ոչ մէկ բան առնելով փախան։ Հայերը այդ այրուցուեր վայրը գացին և բնակութիւն հաստատեցին, ուր շինեցին նաև Ս Աստուածածնայ անունով մատուռ մը որուն նուիրատուները անոնցմէն Նաւասարդ ամսոյ Դ-ին (օգոս․ 15) անկէ ետք մատուռին մէջ հայ եկեղեցւոյ արարողութիւններ կատարելու համար Քահանայ ուղեցին և փոխանակ քահանայի, ճարեցին Սրապին անուն որբակեաց վարդապետ մը, որ շատ հոգածութիւնով կը հանէր հաւատացող ժողովուրդը․ յիշեալը իր իսկ ծախքով ԺԸ․=18 խուց (սենեակ) շինեց մատուռին այցելող ուխտաւորներուն համար, որոնք յատկապէս կուգային Տիրամօր = Աստուածածնայ փայտէ պատկերին մօտ, (այդ հրաշագործ պատկերը պատմէս եղաւ) որ հայ ազգին ուխտատեղին ըլլար այդ տեղը։ Նոյն այդ պատկերը, հրկիզուած աւերակներուն ներքևէն գտան (մեր ժամանակը). նոյն միջոցին իսկ «Դոպիթի բանայու» բառերն ալ նուիրագործուեցան «Աստուածածնայ Տուն» անունով (*) ՌՆԻ = 1420 թուականին, Սարիսու-գանցի (սարիտաղան) Յոյները, հըրաժեց ատրոյ = Դեկտ․ Ե․=5 ին պայծառակերպութեան օրը, ջոջ Տանիկի (Տօնիկ) ապաերը երկրորդ կ'ափին քաղել, ուրչակել։ Հաջին ապատասարներէն մանաւանդ Զէյպէք Կարոն․ շատ գըժուարութիւնով հազիւ բանած չարագործ յոյներէն երէքը, բերաւ Տանիկոյէն, մեր ջոջն ալ յանձնեց անոնք Փէյգի Ակային, որ կախելով բանտարկեց իր տան մէջ․ և 1 տարիէն, անոնց Ռ երկուքը ․․եց, իսկ միւսը Սարի Տուղանի գլխուղը գտնուած էրիս (*) կոչուած ըլուրին վրայ խաչեց։ Ըլուրին բարձունքը գոլ և քաղցրահամ ջուր մը կայ։ Մենք ցուեցանք տեղւոյն (Փէյգի ակային զուռնատուած ստակալի այս դէպքին վրայ․ փէյգի ական տեսնելով մեր վիճակը այդ մասին, սաստիկ յանդիմանեց մեզ, ըսելով, «ուր փուշ փարատարայ պայէ եախչուր» ձայնեները փութացին խաչուած յոյնին մարմինը թաղել։ ՌՆԼ =143) թուականին, Թուրքերը յունեց (Սխեան) գիւղը թալլելով այրեցին, ատա՛ղ, որ շատ գեղեցիկ գիւղ մըն էր ան (Սապանճի) գիւղին գլխացը, և Աստուածածնայ տան ճամբուն վրայ, բարձր բլուրի մը գագաթը շինուած, որուն աւերակը կոչուեցաւ «Զորթլան» (այժմու Չէօք էնէ կոչուած,) ուր բնակեցան Ճ․=100 տուն հարուստ Թուրքեր․ անոնք մեր Քոջ Հայերէն մարդիք իրենց մէջ առին բայց փէյգի ական մեզի դարձուց անոնք սաստիկ յանդիմանելով մեր ջոջ Տանիկ հայրը, ըսելով, առանց իմ գիտութեան հակից մէկը չպիտի բանտուի որովհետև անոնք բարեկամութեամբ չէ որ տարին այդ հայերը։

(Կը շարունակուի) Ս․ Ք․ Գ․

* Այժմու Սրմաշի ջրաղացքին վերեւը գտնուած բլուրը՝ դէպի վանք տանող, ցարդ կ'ըսուի «Աստուածածնայ պայիր» ուխտաւորները տեղւոյն իրենց առյէն կամ ձիէն կիջնան ընդհանրապէս և ոտքով կ'ելլեն մինչև Ս․ Աստուածածնայ եկեղեցին։

Ս․ Եղիա անունով ուխտավայր բլուրը ճիշդ Սարը տղայի գիւղին ցարդ գոյութիւն ունի ուր յատուկ օր մը յոյները ուխտի կերթան, իսկ հայերը ուրիշ անունով «Թօփ ապանձ-ի այդ բլուրը զբօսանքի կերթան օդին ու տեսարանին համար։ Ս․ Ք․ Գ․

## ԱՆՑՆՈՂ ՇԱԲԱԹԸ ՖԱՆԹԷԶԻ ???

### ԽԱ–ՄԷ ՍՊԱՌՆԱԳԻՐ ՍՏԱՑԱՒ

Գեանին ծակը անցնի․․․ անցեալ այս վերջին շաբաթը, որ ոչինչ ունի միխիթարական այս սիւնակներուն մէջ արձանագրելիք։

Բոլո՛րը, բոլո՛րը տարօրինակ, ահաւոր, քամեցի բաներ։

Սկսինք նախ Խա-մէ-ի ուղղուած սպառնագիրէն։

Այս շաբթու մեր սիրեցեալ բարեկամը, Խա-մէ, կ'ըստանայ գիր մը՝ «Քանդիչ, Հրձիգ, և Ահա ռռ» ստորագրութիւններով, որոնք անուշիկ բաներ չէ որ կը հաղորդեն իրեն ապահովաբար։

Քանդիչ, Հրձիգ, Ահռռռ, Եւ, կը կարծենք թէ այսօր հարկ չը կայ ձեզի հոս ըսելու թէ ինչ կը պարունակէր այդ նամակը, որ․․․ գիշերով ներս կիյնայ դուռի մը ծակէն․

Ունէինք չունէինք Խա-մէ մը ունէինք, ան ալ շատ կը կամենան կոր մեզի։

Խեղճ Խա-մէ, մինչև այսօր միայն կուտէին, բայց որովհետև վրան այլեւս ուտելիք միս չէ մնացած, հիմակ ալ եկեր են․․․ գլուխը ուտելու։ Կամ այս Խա-մէ բացատրութեամբ։

Ուղեր են տանք, քանդիչ ու հրձիգ, նոյնպէս ահառը՝ ուղարկել վերին՝ քեզ երուսաղէմ կարգով․․․ մէր հօրը։?

Վերջին անգամ մըն ալ գտնէ զինքը տեսած ըլլալու և էնթէռվիու մը ընելու համար առաջի օր քովը գացի։ Նստած գիր կը գրէր։

— Բարև՛, Պ․ Խա-մէ․ ըսի․ ինչ կ'ընէք կոր։

— Ինչ պիտի ընեմ, պատասխանեց անմնոյն պաղարիւնութեամբ, դամբանականս ձեռքով գրած եմ արդէն, և հիմակ ալ․․․ կտակս կը գրեմ կոր։

Եւ յետոյ աւելցուց։

— Իրաւ է թէ յոյսս նիհարութեանս վրայ դրած եմ, որովհետև նիհար մարդոց գնտակ հասցնելը քիչ մը դժուար բան է, բայց, է՛հ, ինչ կ'ըլլայ, ինչ չ'ըլլար, պէտք է միշտ պատրաստ ըլլալ։ Արդէն խաստավանուած եմ և հաղորդութիւնս ալ առած․․․։

— Կրնա՞մ կտակիդ պարունակութիւնը քիչ մը իմանալ, եթէ անպատեհութիւն մը չը կայ, հարցուցի։

— Ինչո՞ւ չէ, պատասխանեց զուարթօրէն, իրր թէ խօսքը իր մէկ ֆանթէզիին վրայ եղած ըլլար։ Ու սկսաւ կարդալ․

«Կեցցէ վարժարանի խնամակալութեան պաշտօնս կը կտակեմ Անդրանիկ էֆ․ Կէնճեանի, դագաղիս վրայ